Հովհաննես Թումանյան...

Եվ մենք կարծես տեսնում ենք բարձրաբերձ, ալեհեր լեռներ, կապուտակ լճեր, կանաչ անտառներ, որոնք ձգվում են սարերն ի վեր։

Որովհետև հայկական բնաշխարհը Թումանյանի ստեղծագործություններում անկրկնելի է իր հմայիչ գույներով, ինչպես և առավել անկրկնելի է մեծ բանաստեղծի փառապանծ Մարդը, որը երբեք չի ընկճվում դժվարություններից, չի խուսափում պայքարից, ընդհակառակը, ինքն է որոնում պայքարի միջոցներ հարուստների, բռնակալների և պորտաբույծների դեմ։

Հովհ. Թումանյանը սիրում էր մանուկներին, մտահոգվում նրանց ճակատագրով, որն այնքան անորոշ էր մեր դարաշրջանի առաջին տասնամյակում։ Մանուկների մեջ նա տեսնում էր հայ ժողովրդի ապագան և սիրով էր ստեղծագործում այդ ապագայի համար։ Մի քանի սերունդներ են դաստիարակվել նրա իմաստուն հեքիաթներով, թախծոտ պատմըվածքներով ու գողտրիկ բանաստեղծություններով։

Հովհ. Թումանյանը մեծ ինտերնացիոնալիստ էր։ Նրա համար չափազանց թանկ էր ժողովուրդների բարեկամությունը. հանուն այդ սրբազան գործի բանաստեղծը պայքարում էր և՛ գործով, և՛ գրչով։ Առանց փոխադարձ ծանոթության անհնարին է իսկական բարեկամությունը։ Եվ նա թարգմանում էր Լոնգֆելլոյի ու Բայրոնի, Գյոթեի ու Ֆիրդուսու, Ռուսթավելու և Պուշկինի, Ճավճավաձեի ու Շևչենկոյի ստեղծագործությունները։

Հովհ. Թումանյանը հայ ժողովրդի մեծ բանաստեղծն է, որը առաջիններից մեկը ողջունեց սովետական իշխանության հաստատումը Հայաստանում, և որի ստեղծագործական ժառանգությունը դարձել է մեր Միության բոլոր ժողովուրդների սեփականությունը. մի բանաստեղծ, որի մարդասիրական գաղափարները թանկ են առաջադեմ մարդկության համար։

Հովհ. Թումանյանի ծննդյան 100-ամյակը այսօր նշում է մեծ բարեկամության ամուր դաշինքով միաբանված սովետական ժողովուրդների վիթխարի ընտանիքը։





# ԹՈՒՄԱՆՅԱՆՆ ՈՒ ԿՈՒՐԹԱՆՑԻՔ

ՆԱԻՐԻ ԶԱՐՅԱՆ

Նկ. ԱԼԲԵՐՏ ՅԱՐԱԼՅԱՆԻ

Կուրթանը Լոռվա նշանավոր գյուղերից մեկն է, այսօր արդեն բոլորովին փոխված ու բարեկիրթ:

Կուրթանում այսօր բազմահարկ տներ կան, գեղեցիկ ակումբ, միջնակարգ դպրոց և շատ բնակարաններում՝ նորագույն հեռուստացույց:

Կուրթանցիք հիմա կարող են իրենց բնակարաններից ամբողջ ընտանիքով դիտել Անգլիայում տեղի ունեցող սառցապարերը և ասել, թե ով է ամենից ավելի լավ պարում— գերմանուհի Գաբի՞ն, թե՞ ավստրուհի Շուբան: Կուրթանի երեխաները կարող են անգիր թվել աշխարհի բոլոր կինոաստղերին:

Կուրթանն այնքա՜ն է փոխվել:

Բայց այն ժամանակ, երբ տեղի ունեցավ այս դեպքը, կուրթանցիք դեռ շա՜տ միամիտ էին, այնքան միամիտ, որ կարծում էին, թե հարևան Վարդաբլուր գյուղն է Կուրթանի մասին սարքում ու տարածում հայտնի ծիծաղաշարժ պատմությունները:

***



Այս դեպքը տեղի է ունեցել առաջին մեծ պատերազմից առաջ, այն օրերին, երբ Հովհաննես Թումանյանը ձի նստած, մի խումբ ձիավորների հետն առած, սպիտակ դրոշակը ձեռքին, անցնում էր հայ ու ադրբեջանական գյուղերը, համոզում էր մարդկանց, որ նրանք իրար սպանելու ոչ մի շահ չունեն, որ իրար վրա հրացան կրակելուց ավելի հեշտ ու հաճելի է իրար պարզապես բարև տալ ու անցնել:

Հենց այդ օրերին Կուրթանում հիվանդացել էր չորս-հինգ տարեկան մի երեխա: Սահակենց Մակիչի միակ տղան: Ինչ ասես անում էին, չէր օգնում: Եփած եղինջի հյութ խմեցրին, չար աչքը խափանելու համար վզից կապեցին կապույտ հուլունք, տերտերը գլխին պահպանիչ կարդաց, բան դուրս չեկավ: Երեխան հյուծվում էր ու ձեռքից գնում:

Թիֆլիսահայ մի բժիշկ շրջում էր Լոռվա գյուղերում և ձրի բժշկական օգնություն ցույց տալիս գյուղացիներին: Կուրթանում նրան տարան այդ հիվանդ երեխայի մոտ:

— Հյուծված է,— քննելուց հետո ասաց բժիշկը:— Սնունդը պետք է ուժեղացնեք, որ երեխան կազդուրվի: Կաթ, մածուն, կարագ տվեք երեխային:

— Որտեղի՞ց կաթ-մածուն տանք, բժիշկն ապրած կենա,— հարցրեց երեխայի երիտասարդ հայրը՝ Սահակենց Մակիչը:

— Դուք ոչխար, այծ, կով չունե՞ք:

— Ունենք: Բայց կթանը հրե՜ն սարումն է: Էս ճքճքան շոգին կթա՞ն կմնա գեղի մեջ: Կթանը սարումն է:

— Սարումն է, հո Չինաստանում չի՛,— բարկացավ բժիշկը:— Սարից գյուղ բերեք մի կով, կթեք տըվեք երեխային:

Կուրթանցիք զարմացան երիտասարդ բժշկի հնարամտության վրա՝ բժիշկ չէ, Սողոմոն իմաստուն:

***

Մյուս օրը Սոնա կովը սարից բերին: Կթում էին ու բաց արձակում գյուղի մոտակա հանդը: Կովն էլ հո խելքը խոտի հետ չէ՞ր կերել, որ ցորենի կիսահաս կաթնոտ հասկերը թողած՝ միջնակների կոպիտ փուշն ու ճարճատուկն ուտեր: Պոչը շարժելով անուշ էր անում էսօր սրա ցանքսից, էգուց՝ նրա, և հանդապահի հեռվից եկող ձայնին էլ ոչ մի կարևորություն չէր տալիս:

Կուրթանցիք հավաքվեցին գեղամիջում և սկսեցին բողոքել:

— Սհակենց Մակիչը գեղը ձե՞ռ է առել,— բարակ, զրնգուգն ձայնը բարձրացրեց Կոբենց Համբոն՝ քառասունից անց, նիհար, մազմիրուքով մի կուրթան-

ցի, որ հուլիսի շոգ ցերեկը ոչխարի մուշտակ էր հագել։— Սոնա կովը սարից բերել ու մեր ցանքսերն է ուտացնում։

— Նրանց երեխան հիվանդ է, ա՛յ Համբարձում,— բացատրեց ուստա Մամիկոնը, հաղթանդամ, թավաբեղ մի դարբին, որ գյուղի գերանդիներն էր պատրաստում առաջին հունձի համար։— Երեխան պետք է կաթ-մածուն ուտի, որ լավանա։

— Նրա երեխան կաթ-մածուն է ուզում, ես չե՞մ ուզում,— ձայնը ավելի բարձրացրեց Բոխենց Համբոն։— Հրես ինքս էլ եմ հիվանդ։ Մակիչը իր Սոնա կովը բերել է սարից, ես էլ իմ Աշխեն կովը կբերեմ։

Գյուղամիջում բարձրացավ մի խառնաձայն աղմուկ, որի նշանակությունը ձևակերպեց Համբոն իր բարձր, բարակ ձայնով.

— Մենք Սհակենց Մակիչից ինչո՞վ ենք պակաս...

Մյուս օրը գյուղամերձ հանդում երևացին Համբոյի Աշխենը և էլի մի քանի կով։ Այս կովերն իրենց խելքով Սահակենց Մակիչի Սոնայից պակաս չէին։ Սրանք էլ միջնակները թողին ու մտան ցանքսերը։ Մի շաբաթ հետո երկու հարյուրի չափ կով, այծ, ոչխար բերված էին սարից և արձակված գյուղամերձ արտերի մեջ։ Պոչներն ուրախ շարժելով ուտում էին կիսահաս կաթնահամ հասկերն ու քեֆ անում։

— Իմ կովն ուրիշի կովից ինչո՞վ է պակաս,— արդարանում էին կուրթանցիք իրենց խղճի և հարևանների առաջ։



Բայց կուրթանցիք այնքան էլ անխելք չէին, որ չըտեսնեն, թե ինչպես կովերը ցանքսը փչացնում են, գյուղի հացը կտրում։

— Ա՛ ժողովուրդ, մենք մեր ձեռքով մեր տունը քանդում ենք, է՛,— ասաց ուստա Մամիկոնը,— երբ կուրթանցիք էլի հավաքված էին գեղամիջում։— Մենք մեր ձեռքով մեր անասունները թողել ենք մեր ցանքսի մեջ։

— Բա ո՞նց անենք,— հարցրին մի քանիսը։

— Կովերը էլ ետ քշենք սարը։

— Քշենք...

— Ադա ճիշտ է ասում, է՛...

Բայց ոչ ոք չէր շարժվում տեղից։

— Բա խի՞ չեք տեղներիցդ երերում,— հարց տվեց հեգնանքով ուստա Մամիկոնը։

— Թող ամենից առաջ Մակիչն իր կովը սար քըշի,— ասաց ոչխարի մուշտակով փաթաթված Համբոն։

— Ադա, չասացի՞նք, որ նրանց երեխան հիվանդ է,— բարկացավ ուստա Մամիկոնը։

— Նրանց երեխան հիվանդ է, ես հիվանդ չե՞մ.— Համբոն ձայնը բարձրացրեց.— Մինչև Սհակենց Մակիչը իր Սոնա կովը սար չքշի, ես իմ Աշխեն կովը սար քշողը չեմ։ Էս մեկը լավ իմանաս, ուստա Մամիկոն։

Նորից բարձրացավ մի խառնաձայն աղմուկ, որի նշանակությունն այն էր թե.

— Խի՞ պտի ես իմ կովը սար քշեմ ուրիշներից առաջ։

— Դե որ էդպես է,— ասաց ուստա Մամիկոնը.— կանչենք մեր քյոխվա Սարիբեկին, տեսնենք ինչ կասի։

Քյոխվա Սարիբեկը եկավ։

— Կուրթանցոց խոսք հասկացնելը իմ խելքի բանը չի,— ասաց նա ուսերը թոթվելով։— Հրեն Հովհաննես Թումանյանն իր խմբով եկել է Դսեղ։ Գնամ նրան խնդրեմ, որ շնորհք բերի Կուրթան։ Եթե մի ճար կա կուրթանցոց համար, էլի Թումանյանը ցույց կտա։



Մյուս օրը Թումանյանն իր ձիավորներով, քյոխվա Սարիբեկի հետ միասին, մտավ Կուրթան ու կանգ առավ գեղամիջում։ Կուրթանցիք հավաքվեցին մեծ բանաստեղծի շուրջը։

— Բարով եկար, Հովհաննես աղա,— բոլորի կողմից ողջունեց ուստա Մամիկոնը։— Մեր աչքի վրա տեղ ունես։

— Շնորհակալ եմ, ուստա Մամիկոն,— բեղի տակ ժպտաց բանաստեղծը։— Ո՞նց եք ապրում։ Ի՞նչ հոգս ու ցավ ունեն կուրթանցիք։

— Մեր ցավն էն է,— բացատրեց ուստա Մամիկոնը,— որ մեր ձեռքով մեր տունը քանդում ենք։ Սարից անասունը գյուղ ենք բերել, քցել ցանքսերը։ Հրեն, մըտիկ արա։ Տավարը ցանքսը փչացնում է ու մեր հացը կտրում։ Քեզ կանչել ենք, որ մի ճար անես մեր ցավին։

— Հա՜, Հովհաննես աղա,— ձայն տվին ամեն կողմից կուրթանցիք.— մեզ մի խելք սովորացրու։

— Վերև աստված, ներքևը՝ դու։

Թումանյանը տարակուսանքով ուսերը թոթվեց.

— Աստված որ ձեր խելքն առել է, ես աստծուց խելո՞ք եմ ,որ ձեզ խելք սովորացնեմ, ա՛յ կուրթանցիք։

— Աստված մեզանից խռովել է,— բացատրեց Բոխենց Համբոն, որ փաթաթված էր ոչխարի մուշտակով։

— Դե որ աստվածը խռովել է ձեզանից,— ասաց բանաստեղծը,— ես իմ ունեցած խելքով ձեզ ասում եմ

անասունը ինչպես որ սարից հանդ եք բերել, էնպես էլ հանդից քշեք սարը:

— Ադա, ճիշտ է ասում,— ձայն տվին այս ու այն կողմից:

— Քշե՛նք...

— Դե քշեք, էլի,— ասաց բանաստեղծը:— Հենց էս րոպեիս:

Նա շեշտակի նայում էր Բոխենց Համբոյին: Սա պատասխանեց.

— Թող Սհակենց Մակիչը իր Սոնա կովը սար քշի, որ ես էլ իմ Աշխեն կովը քշեմ:

— Առաջ ինքդ քշիր քո կովը, —ասաց Թումանյանը:— Ուրիշներին օրինակ տուր:

— Չէ, թող Մակիչն ինձ օրինակ տա:

— Բոխե՛նց Համբո,— գոռաց մեկ ուրիշը,—մինչև ինքդ քո Աշխեն կովը սար չքշես, ես իմ Նազան կովը սար քշողը չեմ:

— Յա՞...

— Բա՛...

Նորից բարձրացավ մի խլացուցիչ խառնաղմուկ, որի նշանակությունն այն էր, թե.

— Խի՞ պտի ես իմ կովը սար քշեմ ուրիշներից առաջ:

Թումանյանն այստեղ գլուխը տխուր տարուբերեց և դարձավ իր խմբի ձիավորներին, իբր թե կամաց, որ ուրիշները չլսեն.

— Տղերք, դուք տեսաք, որ կուրթանցիներին խելք սովորացնել չեն կարող ո՛չ բանաստեղծ, ո՛չ աստված: Գնանք մեր քյոխվա Սարիբեկի տունը, մի բան ուտենք, մի քիչ հանգստանանք, դուրս գանք, ինչքան որ կով, այծ, ոչխար կա էս հանդերում, հավաքենք տանենք Դսեղ ու բաժանենք աղքատներին:

Թումանյանը ձին քշեց դեպի քյոխվա Սարիբեկի տունը: Ձիավորները նրան հետևեցին:

Կուրթանցիք մի պահ շփոթված նայեցին իրար:

— Ադա լսեցի՞ք, ինչ ասաց...

— Բա չլսեցի՞նք...

— Բա ո՞նց անենք:

— Անասունը քշենք սար:

— Քշե՛նք:

— Ես առաջի՛ հերթն եմ,— գոռաց Բոխենց Համբոն, ոչխարի մուշտակը հագից հանեց նետեց տան կտուրը և շտապեց հանդ:

Բոլորը նրան հետևեցին:

***

Հովհաննես Թումանյանն իր ճաշն ու հանգիստը քյոխվա Սարիբեկի տանը մի փոքր ձգձգեց: Այնպես որ, երբ նա արևմտոցի մոտ իր ձիավորներով նորից երևաց գեղամիջում ու նայեց հանդին, Սահակենց Մակիչի կովից բացի, այնտեղ ոչ մի անասուն չկար:

Կուրթանցիք իրար բոթում ու խնդմնդում էին մեծ բանաստեղծի վրա. այսինքն՝

— Դե անասուն գտիր Կուրթանի հանդում, որ տանես բաժանես քո Դսեղի աղքատներին:

Թումանյանը բեղի տակ ժպտաց, կուրթանցոց մնաս բարով ասաց և իր խումբը ետևից գցած հեռացավ գյուղից:

Կուրթանցիք նրա ետևից քահ-քահ ծիծաղեցին:

Նրանք մինչև այսօր էլ իրար պատմում են ու պարծենում, թե ինչպես իրենք եղան հայ մեծ բանաստեղծ Հովհաննես Թումանյանից ավելի խելոք ու հնարամիտ:



# ՄԻ ԵՐԵԿՈ ՀՈՎՀԱՆՆԵՍ ԹՈՒՄԱՆՅԱՆԻ ՀԵՏ

Ահա բոլորում է Հովհաննես Թումանյանի ծննդյան 100 տարին, և ես չեմ կարող չհիշել այն գեղեցիկ օրը, երբ ինձ բախտ վիճակվեց առաջին անգամ հանդիպել նրան։

1917 թ. օգոստոսի 3-ն էր։ Թիֆլիսի գլխավոր փողոցի երևացող տեղերում, խանութների ցուցափեղկերում փակցված էին կայանալիք «Գրական-գեղարվեստական վոկալ երեկոյի» մեծ աֆիշներ։

Երեկոյան ես և հորաքույրս հայրիկիս թույլտվությամբ եկանք ժողովարան։ Երբ մտանք շքեղ: հայելապատ ճեմասրահը, տեսա այնտեղ իմ սիրելի ուսուցչուհի Նվարդ Թումանյանին. Նա Հովնանյան դպրոցում «Հին աշխարհի պատմություն» էր դասավանդում։ Ես անմիջապես թողեցի հորաքրոջս ձեռքը և պինդ գրկեցի նրան։ Նա ուրախացած համբուրեց ինձ, հետո դառնալով իր կողքին կանգնած բարձրահասակ և ալեհեր մարդուն, ասաց.

— Հայրի՛կ, ծանոթացի՛ր, իմ լավ աշակերտուհիներից մեկն է, պետք է նաև ավելացնեմ, որ մի քիչ էլ չարաճճի է։

Հովհաննես Թումանյանը ձեռքը դրեց գլխիս, ապա մեղմ շոյելով մազերս, ասաց.

— Շատ ուրախ եմ, Նվա՛րդ, որ այդքան լավ աշակերտուհի ունես. ինչ արած, եթե լավ է սովորում, թող մի քիչ էլ չարություն անի։

Հետո նա ինձ հարցրեց, թե ո՞ր դասարանում եմ, ի՞նչ ենք անցել հայերենից, ի՞նչ պատմվածքներ և բանաստեղծություններ և ո՞րն եմ ես ավելի շատ սիրում։ Ես պատասխանեցի, որ պատմվածքներից շատ եմ սիրում «Գիքորը» և ամեն անգամ կարդալիս լաց եմ լինում, հետո շատ եմ սիրում նաև «Աղջիկն ու լուցկիները» Անդերսենի հեքիաթներից, իսկ ոտանավորներից՝ «Հին օրհնությունը», «Մարոն» և Միքայել Նալբանդյանի «Ազատությունը»։

Վերջապես հնչեց համերգի ըսկիզբը ավետող զանգը և հանդիսատեսները անցնելով դահլիճ, գրավեցին իրենց տեղերը։

Վարագույրը բացվեց։ Առաջին բաժնում բեմահարթակի վրա էր տեղի հայ բնակիչներից կազմված մի բազմամարդ երգչախումբ, որը ղեկավարում էր կոմպոզիտոր-մանկավարժ Ազատ Մանուկյանը։ Հնչեցին գեղեցիկ ու հոգեզմայլ հայկական ժողովրդական երգեր. հանդիսատեսներից ոմանք կամ արտասվում էին, կամ մեղմ ձայնակցում երգչախմբին։ Երեկույթին ներկա էր ռուս բանաստեղծ Կոնստանդին Բալմոնտը։ Նա ցածրահասակ էր, բավականին նիհարակազմ, երկար, ժպտերես դեմքով, շեկ և սուր մորուքով։ Բալմոնտը բարձրացավ բեմ և ձեռքը տարածելով դեպի Թումանյանը, ասաց, որ դահլիճում է գտնվում հայ ժողովրդի մեծատաղանդ բանաստեղծ Հովհաննես Թումանյանը, և ծափահարեց։ Ժողովուրդը հոտնկայս հետևեց նրան, հնչեցին բուռն ծափահարություններ։ Տեղից բարձրացավ նաև բանաստեղծը և ժպտադեմ շնորհակալություն հայտնեց նախ Բալմոնտին, ապա հանդիսատեսներին։ Խնդրեցին, որ ելույթ ունենա։ Թումանյանը բարձրացավ բեմ, նախ սիրալիր ողջունեց ներկա եղողներին և սկսեց հմուտ բանախոսի իր ելույթը։

Նա խոսեց ժողովուրդների եղբայրության և համերաշխության մասին, որից հետո արտասանեց մի բանաստեղծություն։ Ապա ելույթ ունեցավ Բալմոնտը, նա նույնպես ողջունեց ներկա եղողներին և դառնալով Թումանյանին ասաց.

— Սրտանց ուրախ եմ, որ այսօր ինձ բախտ վիճակվեց կրկին հանդիպել ձեզ հետ։ Ես ըզգում եմ ձեր անմահ տաղանդը և բարձր գնահատում այն, ձեր ճակատն այնքան պայծառ է, որքան պայծառ է ու վեհ Արարատի գագաթը։ Ցանկանում եմ ձեզ երկար կյանք, առողջություն և ձեր գրչին ստեղծագործական անսպառ կարողություն։

Հետո մոտեցավ Թումանյանին, գրկեց նրան, ու նրանք ջերմորեն համբուրվեցին։ Դահլիճը դղրդում էր ծափահարություններից։

Անցել է այդ օրից ավելի քան կես դար։ Այն ժամանակ ես ապրում էի իմ կյանքի վաղ գարունը, ուստի տպավորությունը ինձ համար առանձնապես ցնցող էր։ Ու մինչև այսօր մեծ բանաստեղծի բարեհամբույր դեմքը, լուսավոր, կախարդական ժպիտը չեն հեռանում իմ հիշողությունից։

ՎԱԼԵՆՏԻՆԱ ՄԽԻԹԱՐՅԱՆ

# ԺՊՏՈՒՄ ԷՐ ԹՈՒՄԱՆՅԱՆԸ

ՀՌԻՓՍԻՄԵ ՊՈՂՈՍՅԱՆ



Հաճախ ինձ թվում է, որ այդ պատահեց շատ մոտիկ անցյալում, երբ մեր տանը, մեր փոքրիկ լուսավոր հյուրասենյակում հայտնվեց Թումանյանի բարձր, թեթև կռացած հասակը ու ես՝ վեցամյա աղջիկ, անհամարձակ մեկնեցի իմ փոքրիկ ձեռքը անծանոթ հյուրին: Բարի ժպիտ, թեթև կկոցած աչքեր և փաղաքշանքի խոսքեր, ուղղված ինձ՝ ահա իմ առաջին տպավորությունը ,որ ստացա մեծ բանաստեղծից:

Նա հոգատար և հարգալից շարժումով թևանցուկ արավ հորս, և նրանք երկուսով մտան հորս առանձնասենյակը: Նա հյուր էր եկել իր հին ուսուցչին՝ Միսակ Ասիլյանին, որը նրան Ներսիսյան դպրոցում դասավանդել էր հայոց լեզու և հայոց պատմություն դեռ անցյալ դարի 80-ական թվականներին:

Նրա գնալուց հետո, հայրս ինձ հպարտությամբ ասաց.

— Գիտե՞ս, մեր հյուրը, իմ աշակերտն է եղել, դա նշանավոր բանաստեղծ Հովհաննես Թումանյանն է...

Իսկ ես արդեն ճանաչում էի նրան: Իմ հոգևոր հանդիպումը նրա հետ եղել էր մի քանի ամիս առաջ, երբ հայրս ինձ համար ընթերցել էր նրա «Շունն ու կատուն» և «Անբախտ վաճառականները»: Այդ և նրա ուրիշ ստեղծագործությունները հուզել էին իմ մանկական երևակայությունը, շոյել էին իմ լսողությունը հարազատ հայոց լեզվի երաժշտականությամբ, բացելով իմ առաջ ժողովրդական իմաստության մի սքանչելի հեքիաթային աշխարհ:

Այս դեպքից հետո էլի մի երկու անգամ մեր փոքրիկ հյուրասենյակում նորից երևացել էր Հովհաննես Թումանյանի պարթև հասակը: Նա հայտնվում էր հանկարծակի, ձեռքում իր նոր հրատարակված գրքերից մեկը, որը ջերմ մակագրությամբ նվեր էր բերում իր ուսուցչին:

Հայրս մեկ-մեկ այցելում էր իր մեծանուն աշակերտին: Հիշում եմ մի այսպիսի հետաքրքիր դեպք: Դա Համաշխարհային առաջին պատերազմի օրերին էր: Հայրս այցի գնաց Թումանյանին: Տուն վերադառնալով, նա իր վերնազգեստի գրպանում հայտնաբերեց լուցկու մի տուփ, որը սխալմամբ դրել էր գրպանը Թումանյանի տանը, երբ վառել էր իր ծխախոտը: Հուզված և այլայլված հայրս խնդրեց եղբորս՝ Լևոնին, որ նա անմիջապես գնա Թումանյանների տուն և վերադարձնի այդ տուփը:

— Ի՞նչ կմտածի Հովհաննեսը, տուփը գրպանս եմ դրել, չէ՞ որ հիմա լուցկու սով է... Գնա՛, գնա՛, որդիս, վերադարձրու տուփը և ներողություն խնդրիր,— հորդորում էր նա եղբորս, որը հրաժարվում էր կատարել այդ տարօրինակ հանձնարարությունը:

Եվ ահա եղբայրս, ստիպված, կատարեց հոր կամքը: Մի փոքր անց, նա հևիհև և հուզված ներս ընկավ տուն ու պատմեց, որ Թումանյանը իր ձեռքից վերցրել

է տուփը և ծիծաղելով ասել. «Գնա հորդ ասա, որ էլ ինչի է նա պետք, եթե չկարողացավ ինձնից մի տուփ լուցկի գողանալ»: Հավանաբար, Թումանյանի կատակի նրբությունը չէր հասել երեխայի գիտակցությանը, բայց այս փոքրիկ զավեշտական միջադեպը վկայում է ուսուցչի և աշակերտի սրտամոտ հարաբերությունների մասին:

Թիֆլիսում Հովհաննես Թումանյանը բնակվում էր Վոզնեսենսկայա փողոցում, իսկ մենք՝ Օրլովսկայա փողոցում, որը զուգահեռ էր Վոզնեսենսկայա փողոցին: Տները գտնվում էին հենց դեմ-դիմաց, այնպես որ մեր պատշգամբից լավ դիտվում էին Հովհաննես Թումանյանի բնակարանի պատուհանները և փողոցի կողմը գտնվող պատշգամբը:

Հաճախ, ծնողներիցս ծածուկ, ես վերցնում էի հորս դաշտային հեռադիտակը և դուրս գալով պատշգամբ, մանկական հետաքրքրությամբ դիտում էի դիմացի պատուհանները: Երբեմն ինձ հաջողվում էր տեսնել դիմացի պատշգամբում ծանոթ, թեթև կռացած պարթև հասակը և մազերի վաղ արծաթը, իսկ մեծ լուռեցու կողքին ես տեսնում էի նրա գրչակից ընկերներին՝ առյուծաբաշ Շիրվանզադեին, տեսնում էի Ղազարոս Աղայանին, Ավետիք Իսահակյանին, Դերենիկ Դեմիրճյանին և ուրիշներին:

Ամեն ամիս ես ստանում էի Ստեփան և Կատարինե Լիսիցյանների հիմնած մանկական ամսագիր «Հասկերը», որի մոտ աշխատակիցը և խմբագրական կոլեգիայի անդամն էր Հովհաննես Թումանյանը: Այստեղ տպվում էին նրա աննման բանաստեղծությունները, լեգենդները և հեքիաթները մանուկների համար՝ Երիցյանի և Ռոտտերի անգերազանցելի նկարազարդումներով: Հիշում եմ այն անմոռաց տպավորությունը, որ ստացա, երբ հայրս այդ ամսագրի առաջին համարում ինձ համար ընթերցեց «Գառնիկ Ախպեր» հեքիաթը: Իսկ 1907 թվից դպրոցում ես սերտում էի իմ մայրենի լեզուն «Լուսաբեր» դասագրքով, որի կազմողներից մեկը Հովհաննես Թումանյանն էր:

Մանուկների համար գրած նրա ստեղծագործությունները հավերժ մտան մանկական գրականության ոսկե գանձարանը: Դրանով է երևի բացատրվում այն չտեսնված ցույցը, որ կազմակերպել էին մանուկ ընթերցողները Թիֆլիսում նրա ծննդյան 50-ամյակի օրերին: Հիշում եմ, ինչպես հայկական դպրոցների երկսեռ աշակերտությունը ծաղկեփնջերով, ալիքվող շարասյուներով, դիմում էր դեպի սիրելի բանաստեղծի տունը: Մանուկների հնչեղ երգերը և գոչյունները մի զմայլելի երաժշտությամբ էին լցրել փողոցը Հովհաննես Թումանյանի տան առաջ: Իսկ փոքրիկ պատշգամբից երջանկության արտասուքը աչքերին՝ նրանց էր ժպտում Թումանյանը...

Նկ. ԼԻԴԱ ԽԱՆԱՄԻՐՅԱՆԻ



# ԱՄԵՆԱԲԱՆԱՍՏԵՂԾԸ




Հովհաննես Թումանյան՝ ահա նվիրական մի անուն, թերևս ամենանվիրականը ամեն մի հայի համար՝ երկրագնդի որ աշխարհամասում էլ գտնվելիս լինի նա:

Հայտնի է, որ Թումանյանը հովանավորել և օգնել է մի շարք գրողների ու մտավորականների: Դրանց թվին է պատկանում նաև հայրս՝ մանկագիր ու առակագիր Աթաբեկ Խնկոյանը (Խնկո Ապեր) և նրա ընտանիքը:

Արձագանքելով Աթ. Խնկոյանի նամակ-դիմումին, Հ. Թումանյանը ջերմ աջակցություն է ցույց տալիս նրան, 1910 թ. աշնանը Սպիտակի շրջանի Նալբանդ գյուղից փոխադրվելու Թիֆլիս և տեղավորվելու Ստեփան ու Կատարինե Լիսիցյանների պանսիոն-գիմնազիայում ուսուցչի պաշտոնով, միաժամանակ ըստանձնելով հանրահայտ մանկա-պատանեկական հանդես «Հասկեր»-ի խմբագրատանը պատասխանատու աշխատանք:

1911—1913 թվականներին, երբ ես դեռ ցածր դասարանների աշակերտ էի, հայրս հաճախ էր ինձ իր հետ խմբագրատուն տանում: Ահա այդտեղ ինձ հնարավորություն ստեղծվեց ծանոթություն և մտերմություն հաստատելու «Հասկեր»-ին աշխատակցող հայ գրողների՝ Ղազարոս Աղայանի, Հովհաննես Թումանյանի, Դերենիկ Դեմիրճյանի, Վրթանես Փափազյանի, Հակոբ Աղաբաբի և ուրիշների հետ: Նրանց բոլորին ես «հորեղբայր» էի ասում, բացի Աղայանից, որին անվանում էի Ղազարոս պապիկ:

«Հասկեր»-ի խմբագրատանը երբեմն ես ներկա եմ եղել խմբագրական ժողովներին, ուր քննարկվում էին առաջիկա համարի նյութերը: Այդ նիստերում հանդես էր գալիս Հ. Թումանյանը: Բազմակողմանիորեն վերլուծելով քննարկվող նյութը, նա տալիս էր միանգամայն կարևոր խորհուրդներ, քաջալերող խոսք էր ասում կամ ընկերական դիտողու-

թյուն անում նյութի առթիվ: Թումանյանի ասած խոսքը, կարծիքը վճռական դեր էր խաղում: Երբեմն Թումանյանը այցելում էր «Հասկեր»-ի խմբագրատուն: Եթե պատահում էր, որ այդ օրը հայրս ինձ խմբագրատուն էր տարած լինում, ապա դա ինձ համար երջանիկ օր էր... Հաճելի առիթ էր ստեղծվում ամրապնդելու իմ մտերմությունը մեծ բանաստեղծի հետ: Հազիվ տասը տարեկան էի, երբ «Հասկեր»-ի խմբագրատանը, առաջին անգամ, Թումանյանի ներկայությամբ, բարձրանալով աթոռի վրա, արտասանեցի մի-մի հատված «Շունն ու կատվից» ու «Զարի վերջից» և երգեցի մի երգ: Շատ հավանեց ու դիմելով հորս, ասաց. «Լավ առոգանություն ունի տղադ, Աթաբեկ, կարող է շնորհքով դերասան կամ ասմունքի ուստա դառնալ: Էն էլ ասեմ, որ նրա շուրթերում առանձնապես հարազատ է հնչում Լոռվա բարբառը, իսկական լոռեցու նման է արտասանում «որդիանց որդի» ու էդ տեսակի դարձվածքները. դե, ասենք, դա հեշտ բացատրելի է՝ ձեր Փամբակը ու մեր Լոռին մոտ դրկիցներ են»: Ապա գրկելով ինձ ու համբուրելով, Թումանյանը հարցրեց, թե դպրոցում ի՞նչ գնահատականներ ունեմ, ինչքա՞ն ժամանակ եմ օրվա մեջ տրամադրում խաղին և ընթերցանությամբ պարապո՞ւմ եմ, թե՞ ոչ: Ես պատասխանեցի, որ բոլոր գնահատականներս լավ են, բացի թվաբանությունից, որից մի փոքր կաղում եմ, սակայն ժամանակս գլխավորապես նվիրում եմ ընթերցանության, իսկ կիրակի ու տոնի օրերը աշխատում եմ անպայման լինել օպերային կամ դրամատիկական թատրոնների ցերեկային ներկայացումներին: «Ասել կուզի, Վահե ջան, կարգին փող ես մսխում թատրոնի վրա,— ասաց Թումանյանը:— Էդ խո հորդ գրպանին կոռ ես տալիս»: «Հովհաննես հորեղբայր,— պատասխանում եմ ես,— նախ՝ իմ թատրոն հաճախելը 20 կոպեկից ավելի չի նստում, որովհետև ստիպված եմ գալյորկայի տոմս վերցնել, այն էլ կանգնելու տեղը, երկրորդ՝ որ հազվագյուտ դեպքերում եմ հայրիկի հաշվին տոմս առնում, այդ գործում ինձ օգնության են գալիս մեր ընտանիքի այնպիսի բարեկամներ, ինչպես Ռոմանոս Մելիքյանը, Հակոբ Աղաբաբը, Սիմակը, Դերենիկ Դեմիրճյանը»:

«Ճիշտ է, Հովհաննես ջան,— ասում է հայրս,— սա մեր հոգին հանեց. չուտի չխմի, միայն թե աստծո կիրակի օրը մի կերպ գցի իրեն կամ Արքունական կամ Արտիստական թատրոն, ոնց որ թե իր նախրապան պապը օպերա ու դրամա տեսնելով մեռավ...»

«Հա՛, հա՛, հա՛,— բարձրաձայն ծիծաղում է Թումանյանը:— Ոչինչ, էդ լավ է, որ փոքրուց հետաքրքրություն է ցույց տալի դեպի թատրոնն ու արվեստը: Դե, Վահե, սիրելիս, ես ոչ Ռոմանոսից, ոչ Դեմիրճյանից, ոչ էլ Աղաբաբից պակաս գնահատող չեմ քո էդ գեղեցիկ ձգտումները և մեկ էլ, որ էդքան լավ ես արտասանում բանաստեղծական գործեր, առ քեզ, իմ հաշվից էլ հենց էկող կիրակի օրը գնա թատրոն»:— Ասավ ու ժիլետի գրպանից հանելով հիսուն կոպեկանոց, մեկնեց ինձ: Բայց երբ ես տեսնելով հորս զայրույթով լի հայացքը, չուզեցա վերցնել դրամը, Թումանյանը ուղղակի դրամը խցկեց ափս, միաժամանակ նա սկսեց հորդորել հորս, որ չվրդովվի և քեֆս չկպչի:

Հետագայում Թումանյանը մի 3—4 անգամ էլի դրամ է տվել ինձ իր աշխատանոցում, երբ ես տարել եմ իրեն «Հասկեր»-ի նոր լույս տեսած համարը կամ հորս հանձնարարությամբ, եղել եմ մեծ բանաստեղծի մոտ, «Հասկեր»-ի համար նրա պատրաստած նյութը խմբագրատուն տանելու:

Ես մեծ հաճույքով էի կատարում հորս այդպիսի հանձնարարությունները: Նախ՝ առիթ էր ստեղծվում տեսնվել ու զրուցել Թումանյանի հետ, վայելել այդ նշանավոր ընտանիքի սիրալիր ընդունելությունը: Դեռ թարմ են հիշողությանս մեջ այն երջանիկ պահերը, երբ շատ հյուրասեր տիկին Օլգա Թումանյանը լցնում էր գրպանս քիշմիշ լաբլաբուով ու «շուշա» կոնֆետով կամ հրավիրելով սեղանատուն՝ հյուրասիրում կակաոյով ու համեղ թխվածքով:

Մի երկու անգամ էլ հորս հետ եղել եմ Թումանյանի տանը նրա անվանակոչության առիթով կայացած երեկույթ-խնջույքներին, ուր հավաքված էին լինում շատ գրողներ ու մտավորականներ, որտեղ փայլում էր հանճարեղ տանտիրոջ թամադայական անգերազանցելի տաղանդը:

1919 թ. փետրվարին Թիֆլիսում լայնորեն նշվեց Հ. Թումանյանի ծննդյան 50-ամյակը: Ամենուրեք հայկական դպրոցներում կազմակերպվում էին ճոխ հանդեսներ: Այդ հոբելյանը շուքով նշվեց նաև Թիֆլիսի 3-րդ արական գիմնազիայում, ուր ես ավարտական դասարանի սան էի: Նախ՝ Թումանյանին այցելեցին կրտսեր դասարանների աշակերտները, հետևյալ օրը ամբողջ գիմնազիան, դասերից հետո իր փողային նվագախմբով բարձրացավ Վոկնեսենսկայա փողոցով դեպի հոբելյարի տունը: Նվագախումբը հանդիսավորությամբ կատարելով զեյթունցիների քայլերգը, ողջունեց Թումանյանին, որ դուրս էր եկել պատշգամբ իր ընտանիքի հետ միասին: Աշակերտությունը և ուսուցչական կազմը «Կեցցե՛ Թումանյանը» բացականչություններով ողջունեցին սիրելի հոբելյարին: Գիմնազիայի դիրեկտորը ողջույնի խոսք ասաց: Իսկ 3-րդ օրը գիմնազիայի դահլիճում կայացավ աշակերտության ուժերով ճոխ հոբելյանական հանդես, որտեղ ներկա էր հոբելյարը իր դստեր՝ Նվարդի հետ:

Մենք բոլորս այդ օրը հեռացանք դահլիճից անհուն հրճվանքով, տանելով մեր մատաղ սրտերում սիրելի բանաստեղծի լուսավարար ժպիտը, որ նա արևի պես բաժանում էր բոլորին:



Սրանից ավելի քան 60 տարի առաջ էլ հայ մանուկները, ինչպես և այսօր, մայրենի լեզուն սովորում էին Հովհաննես Թումանյանի ստեղծագործություններով: Ավելին, Թումանյանը այն ժամանակ հրատարակել է նաև դասագիրք՝ «Լուսաբերը»:

Ստորև տպագրված «Ամենալավ վկայականը» պատմվածքը վերցված է «Լուսաբերից»:

# ԱՄԵՆԱԼԱՎ ՎԿԱՅԱԿԱՆԸ

*Մի վաճառական լրագիրներում հայտարարել էր, թե իր խանութի համար մի աշակերտ է հարկավոր:*

*Շատ մարդ եկավ վարձվելու. վերջապես վաճառականը ընտրեց մեկին:*

*— Ասա, խնդրեմ — հարցրեց մի ծանոթ,— ինչո՞ւ դրան ընտրեցիր: Ոչ վկայական ուներ, ոչ էլ ճանաչում էիր: Ուրիշները հրաշալի վկայականներ բերին, բայց դու ճամփու դրիր:*

*— Սխալվում ես,— ասավ վաճառականը:— Այս տղան շատ վկայականներ ուներ: Սենյակը մտնելուց առաջ ոտները լավ սրբեց ու դուռը ծածկեց առանց թրխկացնելու. ուրեմն մաքրասեր է ու կարգապահ: Իր նըստած աթոռից վեր կացավ ու տեղ տվավ ներս մտնող կաղ մարդուն. ուրեմն բարեսիրտ է ու հարգում է ավելի հասակավորին: Դեռ շեմքին գլխարկը հանեց, արագ ու կտրուկ պատասխաններ էր տալիս իմ հարցերին, ուրեմն քաղաքավարի է ու աչքաբաց: Կռացավ, բարձրացրեց գիրքը, որ դիտմամբ ձգել էի հատակին, մինչդեռ ուրիշները դեմ էին ընկնում գրքին կամ կողքից անցնում: Հանգիստ սպասում էր իր հերթին, չաշխատելով ուրիշների առաջը կտրի, ուրեմն լավ կրթված տղա է: Շորերը լավ սրբված էին, իսկ երեսն ու ձեռքերը մաքուր: Ի՞նչ ես կարծում, այս բոլորը միասին լավագույն վկայականը չի՞:*

Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ





# ԱՌԱՋԻՆ ԶԱՆԳԸ

*ԷԴՎԱՐԴ ԱՎԱԳՅԱՆ*

Թողած ճամբար ու արշավներ,
Թողած խաղեր, թողած մարզանք,
Մենք դպրոց ենք եկել այսօր,
Եվ հնչում ես, առաջի՜ն զանգ։

Դու հնչել ես շատ-շատ անգամ,
Ղողանջիդ մեջ սեր ու հուզանք,
Բայց ուրիշ է ձայնդ հիմա,
Դպրոցական առաջին զանգ։

Քեզնով ելանք միշտ դեպի վեր
Ու գիտության սեմին հասանք,
Եվ տանում ես նորից առաջ,
Նոր ճամփեքով, առաջին զանգ։

Մենք կքայլենք ղողանջով քո,
Եվ մեր հոգին՝ սերմանված ցանք,
Կտա ծիլեր, կզորանա
Քո երգի տակ, առաջին զանգ։

Կանցնեն օրեր, կանցնեն տարիք,
Ինչպես անհուն գետի հոսանք,
Բայց քեզ երբեք չենք մոռանա,
Դպրոցական առաջի՜ն զանգ...

*Նկ. ՌԱՖԱՅԵԼ ՊԵՏՐՈՍՅԱՆԻ*

# ՎԵՐԱԴԱՐՁ

*ԿԱՄԱՐԻ ՏՈՆՈՅԱՆ*

Պատահեց այնպես, որ Սեթը վիճեց ֆիզիկայի դասատուի հետ և պատասխանեց կոպիտ: Դասերից հետո տղաներն ու աղջիկները մնացին դասարանում: Այստեղ Սեթը լսեց իրեն հանդիմանող շատ խոսքեր, և դասարանում չեղավ մեկը, որ պաշտպաներ նրան: Նույնիսկ Աշոտը, որի հետ Սեթը հատկապես մտերիմ էր և որի հետ միշտ գնում էին անտառ՝ նկարելու, նույնիսկ Աշոտը չպաշտպանեց նրան: Հավաքից հետո Սեթը կանգնեց դպրոցից քիչ հեռու, փողոցում և սպասեց: Տղաներն ու աղջիկները դուրս եկան դպրոցից, խումբ-խումբ անցան նրա մոտից, և ապա մի խումբ տղաների հետ դուրս եկավ Աշոտը:

— Աշոտ,— ասաց Սեթը,— վաղը կգա՞ս նկարելու:

— Կգամ,— ասաց Աշոտը և տղաների հետ հեռացավ փողոցով:

Սեթը կանգնած մնաց փողոցում: Մթնշաղ էր, գյուղի խրճիթներում վառել էին լույսերը, ցերեկը հալված գետինը նորից սառել էր, օդը ցրտել էր: Եվ Սեթը, բոլորովին վատ տրամադրության մեջ, պայուսակը թևատակին սեղմած, քայլեց դեպի տուն:

— Դասերդ չես պատրաստում,— երեկոյան նկատեց մայրը:

— Այսօր մեզ ոչինչ չեն հանձնարարել,— ասաց Սեթը:

— Այդպես չի լինում,— ասաց մայրը:— Չգիտեմ, դու արդեն մեծ տղա ես, ինքդ գիտես, թե ինչ ես անում:

Առավոտյան Սեթը դպրոց չգնաց: Այդ օրը Աշոտը չեկավ լճափ՝ նկարելու, և նա լճափում միայնակ էր: Անձամբ Աշոտին Սեթը ոչ մի վատ բան չէր արել, բայց Աշոտը չեկավ, և Սեթը այստեղ հասկացավ, որ նա պարզապես վախկոտ էր, վախենում էր, որ եթե ինքը Սեթի հետ մտերիմ լինի դասարանում, իրենից երես կթեքեն: «Ուրեմն նրա հետ չարժե մտերիմ լինել»,— մտածեց Սեթը: Սեթը դպրոց չգնաց և հետևյալ օրը: Երեք օր շարունակ նա գնում էր լճափ՝ նկարելու: Գուցե նրանից, որ նա շատ ժամանակ էր ունենում կամ գուցե նա հատկապես ջանում էր, սակայն նկարը հիանալի էր ստացվում. ծառաբների շուրջը ձյունը հալվել է, լճակի մուգ, խոր ու պաղ ջրում կոտրատված արտացոլվում են ծառաբները, լճակի շուրջը ետ քաշված ձյան տակից բացվել է սև, թաց հողը, և արև չկա, սակայն կզացվում է նրա ջերմությունը հողի մեջ և մանավանդ լույսը՝ կեչիների սպիտակ ծառաբների վրա: Հեռվում փայտաշեն խրճիթների տանիքներին նույնպես ձյունը հալվել է: Մթնշաղ է: Քիչ հետո խրճիթների լուսամուտներում կվառվեն լույսերը և լճի վրա կտարածվի մառախուղը. գիշերը օդը նորից կցրտի: Օրը իսկապես սկսում էր ցրտել, և Սեթը մտածեց, որ արդեն տուն գնալու պահն է: Լճափից քիչ հեռու, ճանապարհից ինչ-որ մեկը ձայնեց նրան.

— Սե՛թ:

Օլյան ճանապարհին կանգնած թափահարում էր ձեռքը: Սեթը ոչինչ չէր հասկանում, և Օլյան, բարակ վերարկուով, շարֆը գլխին քաշած, ձյան մեջ վազելով մոտեցավ նրան.

— Բարև՛, Սեթ,— ասաց Օլյան:

Սեթը չպատասխանեց նրան. միևնույն է, այդ դասարանում Սեթը հիմա բարեկամ չունի:

— Իսկ ինչպե՞ս է կոչվում այս նկարը,— հարցրեց Օլյան:

— Ինչպես որ կոչվում է,— ասաց Սեթը:

— Դու ինչո՞ւ դասի չես գալիս,— հարցրեց Օլյան:

— Իսկ այնտեղ դա որևէ մեկին հետաքրքրո՞ւմ է,— ասաց Սեթը:

Օլյան չպատասխանեց:

— Դու ի՞նչ ես մտադիր,— հարցրեց Օլյան:

— Դու իսկապե՞ս իմ ետևից ես եկել, թե՞ անցնում էիր այստեղից,— հարցրեց Սեթը:

— Մթնշաղին ես գնում էի անտա՞ռ,— հարցրեց Օլյան:

— Չե՞ս ստում,— հարցրեց Սեթը:

— Չեմ ստում,— ասաց Օլյան:— Ինչպե՞ս է կոչվելու այս նկարը,— հարցրեց նա:

— Նկարը կանվանեմ «Ձնհալ»,— ասաց Սեթը:



— Դու ի՞նչ ես մտադիր,— հարցրեց Օլյան:— «Ձնհալը» շատ կրկնված անուն է,— ասաց նա:

— Կգնամ աշխատելու,— ասաց Սեթը:— Երեկ գնացի մեխանիկական գործարան. ասում են՝ միայն խառատի աշակերտ կարող ենք վերցնել: Վաղը կգնամ բանավան, երևի մի գործ կճարեմ: Դու ուրիշ ի՞նչ անուն կտայիր այս նկարին,— հարցրեց Սեթը:

— Իսկ մայրդ ի՞նչ է ասում,— հարցրեց Օլյան:— Աշխատելու մասին:

— Քո գործն է, ասում է, դու արդեն հասուն տղա ես, փոքր չես և քո լավն ու վատը պիտի ճանաչես: Հայրդ եթե լիներ, ասում է, կհասցներ վկակոթից ու կտաներ դպրոց: Իսկ ես արդեն հոգնել եմ, ասում է:

Լռեցին: Սեթը շարունակում էր նկարել: Օլյան մրսում էր, նա նստել էր ցածրիկ աթոռակին, կգում էր ելնելու, շարժվելու ցանկություն. բայց նաև կգում էր, որ այդպես նրան թողնել գնալ չի կարելի:

— Երեք օր է դպրոց չեմ գալիս, և ինձանով ոչ ոք չի հետաքրքրվում,— ասաց Սեթը:

«Այո, դասարանում կարծես ոչինչ չի եղել»,— մտածեց Օլյան և այստեղ կգաց, որ այդ տղայի վերաբերյալ իրենց վարմունքում իրենք իսկապես ինչ-որ կարևոր բանում թերացել են, շատ կարևոր մի բանում:

— Իսկ նկարե՞լը,— հարցրեց Օլյան:

Սեթը ուշացնում էր պատասխանը, նա, ինչպես երևում էր, ամեն ինչ չէր կշռադատել:

— Նկարելը կթողնեմ կամ կզբաղվեմ, երբ ժամանակ կլինի: Կաշխատեմ, մի՛ կարծիր, թե վատ կլինի,— ասաց Սեթը:— Փող կունենամ, ուզածս կառնեմ և ամենալավ դրոշմանիշերը կառնեմ: Քաղաքում մի հավաքող ամբողջ Ռեմբրանդտի շարքն էր վաճառում:

— Գուցե հիմա վատ չի լինի,— ասաց Օլյան, կգալով, որ նրան համոզելը իզուր է:— Գուցե վատ չի լինի, դրոշմանիշերի առումով, և Ռեմբրանդտի շարքն էլ կունենաս:

«Գուցե վատ չի լինի,— մտածում էր Օլյան,— բայց, այ, նրա ամբողջ նկարելու շնորհքը իզուր կկորչի, իսկ նա կարող է անվանի նկարիչ դառնալ»:

— Քեզ անհրաժեշտ է սովորել,— ասաց Օլյան:

— Իսկ դասարանում ինձ ո՞վ է սպասում,— ասաց Սեթը:

— Բոլորը:

— Ոչ ոք էլ չի սպասում:

— Դու պիտի ներողություն խնդրես ֆիզիկայի դասատուից,— ասաց Օլյան:

— Ես դեմ չէի նրանից ներողություն խնդրելուն,— ասաց Սեթը:— Կուզե՞ս «Լիալուսնի ելքը» քեզ տամ,— հարցրեց նա Օլյային:

«Լիալուսնի ելքը» Օլյային շատ է դուր եկել, հիանալի նկար է:

— Որոշել եմ բոլոր նկարներս բաժանել,— ասում է Սեթը:

Օլյան նայում է նրա վրձինի շարժումներին, Սեթը խառնում է ներկերը, քսում է կտավին:



— Դու այդտեղ ձեռք մի՛ տուր,— ասում է Օլյան:— Այդպես լավ է, կփչացնես:

Սեթը շարունակում է քսել, և լճակի ջուրը կախարդանքով ավելի պարզանում ու խորանում է:

— Դու իսկապե՞ս իմ ետևից եկար,— հարցրեց Սեթը:— Այն օրը հավաքից հետո ես փողոցում կանգնեցի, բայց տղաներից ու աղջիկներից ոչ ոք չմոտեցավ ինձ:

Ահա թե ինչ, մտածեց Օլյան, և հանկարծ կգաց. խոշոր, վառվռուն աչքերով, նիհար, երկարավուն ու գունատ դեմքով այդ տղան դասարանում բոլորից լավ տղան է: Բոլոր տղաներից լավը: Վերջին հավաքում իրենք քննեցին նրա հարցը, այն, որ նա ֆիզիկայի դասատուին կոպտել է. «Սե՛թ,— ասացին նրան,— դու պիտի իմանաս, թե ինչպես պիտի իրեն պահի պիոները»: «Սե՛թ,— ասացին,— դա անվայել է աշակերտին»: «Սե՛թ, դու ամեն չափն անցնում ես», «Սե՛թ, դու պիտի լրջորեն մտածես քո վարքի մասին»,— ասացին համարյա բոլոր տղաներն ու աղջիկները, և ինքը՝ Օլյան նույնպես ասաց... այդպիսի խոսքեր, իսկ հետո թողեցին նրան դպրոցի մոտ, ճանապարհի վրա, և հիրավի այդ օրը ինչպիսի տխրեցնող օր էր, և այդ օրվա մթնշաղի մեջ իսկապես ինչ-որ անմխիթարական բան կար:

— Ցրտում է,— ասաց Սեթը և սկսեց հավաքել պատկերակալն ու ներկերը:

Ոտքերի տակ կարծրացող ձյունը տրորելով նրանք քայլեցին տների կողմը: Գյուղի լույսերը վաղուց վառվել էին: Ճանապարհը դեռևս ցեխոտ էր: Լճի վրա իջնում էր մառախուղ: Օդում կանգնած է ծխի ու թխվածքի հոտը:

Մտան գյուղ: Օլյան կանգ առավ իրենց դարբասի մոտ:

— Բարի գիշեր, Սե՛թ,—ասաց Օլյան:

— Բարի գիշեր,— ասաց Սեթը:

Եվ ապա Օլյան հարցրեց.

— Վաղը դպրոց կգա՞ս:

— Դու հատկապես իմ ետևի՞ց էիր եկել,— հարցրեց Սեթը:

«Հատկապես», գլխի շարժումով հաստատեց Օլյան:

— Օլյա,— ասաց Սեթը,— կուզե՞ս այս նկարը քեզ տամ: Կանվանեմ՝ «Ձմեռ: Մթնշաղ»:

Հետևյալ օրը Օլյան դասարանում հայտնեց. «Տղանե՛ր, աղջիկնե՛ր, դասերից հետո տուն չգնանք: Հավաք է լինելու»:

Այդ օրը հավաքում Օլյան նրանց պատմելու շատ բան ուներ:

*Նկ. ՀՐԱՅՐ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻ*

# ՄԱՐԻՆԱՅԻ ԿԱՅԱՐԱՆՈՒՄ

•



ԳԱԳԻԿ ԲԱԴԱԼՅԱՆ

Նկ. ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ

Թշնամու արձակած գնդակից վիրավորված եմ: Վերքս շատ ծանր չէ, սակայն խանգարում է քայլել: Մի կերպ հասել եմ երկաթուղագծին, հուսալով, որ սանիտարական գնացքները կկանգնեն ու ինձ էլ հոսպիտալ կտանեն: Բայց, ավա՜ղ... Գնացքները գալիս անցնում են: Ոչ մեկը չի կանգնում: Նույնիսկ ապրանքատարները: Հոգնած եմ, ոտքիս վերքը ցավում է: Հանկարծ հեռվում տեսնում եմ մեկին: Գծի վրայով գալիս է դեպի ինձ: Մոտենում է: Ձեռքին գործիքներ կան: Երկաթուղային աշխատող է, ճերմակած մազերով մի ծերունի:

— Ինչ է, վիրավորվե՞լ ես, —հարցնում է:

— Այո՛, ոտքից:

— Կարո՞ղ ես մի կես կիլոմետր էլ քայլել: Ա՛յ, այնտեղ մեր տունն է, կհանգստանաս, թեյ կխմես...

— Կգնամ, հայրիկ, մի քիչ հանգստանամ:

— Ո՛չ, ավելի լավ է այսպես անենք: Ես գործիքները կթողնեմ այստեղ, քեզ կօգնեմ հասնես մեր տուն, հետո ես ետ կգամ գծերն ստուգելու, շուտով գնացք պիտի գա:

— Բայց, հայրիկ, ես ինքս...

— Ո՛չ, ո՛չ, շատ հյուծված ես երևում: Դե, վե՛ր կաց, շարժվեցինք:

— Իսկ Ստարոբելսկ քաղաքը շա՞տ հեռու է,— հարցնում եմ ես:

— Չորս կիլոմետր: Ինչ է, ուզում ես ոտքո՞վ գնալ: Չէ, շատ ծանր կլինի: Գիշերը կմնաս մեր տանը, վաղը մի բան կմտածենք, անօգնական չենք թողնի:

— Իսկ ձերն ի՞նչ է: Կիսակայարա՞ն:

— Կիսակայարան է, սակայն Մարինայիս շնորհիվ կայարան էր դարձել: Խաղաղ ժամանակ գնացքներ էին կանգնում:

— Իսկ ո՞վ է այդ Մարինան, գյուղսովետի նախագա՞հ է:

— Ի՞նչ նախագահ: Թոռնիկս է, արդեն 17 տարեկան է: Իսկ այն ժամանակ մի փոքրիկ աղջիկ էր, որ հանրահայտ դարձավ:

— Ինչպե՞ս, քաջագործությո՞ւն կատարեց, երևի գնացք է փրկել խորտակումից:

— Է՛, որդի՛ս, միամիտ-միամիտ հարցեր ես տալիս: Դե, ավելի լավ է հենվիր ինձ, որ ոտքիդ ծանրություն չընկնի, մենք կամաց-կամաց կգնանք, իսկ ես կպատմեմ սկզբից:

Այդ մի 10 տարի առաջ էր: Ես ու տղաս էլի այստեղ էինք աշխատում: Ապրում էինք ես, պառավս, տղաս, հարսս ու Մարինաս՝ յոթ տարեկան թոռնիկս:

Եկավ ժամանակը, որ Մարինան պիտի դպրոց գնա: Բայց որտե՞ղ: Այստեղ ընկած է մեր միակ տնակը, իսկ մոտիկ բնակավայրը, ուր դպրոց կա՝ Ստարոբելսկ քաղաքն է: Ինչպե՞ս վարվել, չէ՞ որ մեր կիսակայարանում ոչ մի գնացք չի կանգնում, ամեն օր ինչպե՞ս երեխային չորս կիլոմետր ոտքով տանենք քաղաք ու ետ բերենք: Երեխան շատ կհոգներ:

Իսկ Մարինան ուշիմ երեխա էր: Շատ տառեր արդեն ճանաչում էր, լավ էլ հաշվում էր: Երեխան պիտի սովորեր, և մենք 1932 թվականի աշնանը դպրոց տարանք: Քանի ձյուն չկար, հերթով Մարինային քաղաք էինք տանում ու ժամը 2-ին ետ բերում: Նա այնպես սիրեց դպրոցը, որ երբեք չտրտնջաց, թե հոգնում է, ոտքերը ցավում են: Երբ ձմեռը եկավ, նրան սկսեցինք սահնակով տանել բերել: Ի՞նչ արած, ուրիշ ելք չկար:

Այդպես անցավ չորս ամիս: Նա արդեն լավ կարդում ու գրում էր, ձեռագիրն էլ վատ չէր: Ուսուցչուհին շատ գոհ էր: «Լավ երեխա է, ընդունակ, ափսոս, հեռու եք ապրում, Մարինան միշտ հոգնած տեսք ունի: Մի բան պիտի մտածել»,— ասում է Գալինա Սերգեևնան:

— Ինչ անեմ, գնացքը որ կանգներ, հեշտ կլիներ,— ասում եմ ուսուցչուհուն:

— Իսկ դուք գրեք Մոսկվա, գուցե օգնեն:

Գրենք Մոսկվա՞, ո՞ւմ: Ո՞վ կարող է օգնել:

Եկա տուն, կնոջս հետ նստած այդ մասին ենք խոսում:

Մարինան դաս է պատրաստում: Տղաս ու հարսս գործով գնացել են Ստարոբելսկ:

— Գալինա Սերգեևնան խորհուրդ է տալիս գրել Մոսկվա, գուցե գնացքը կանգնի մեր կիսակայարանում,— ասում եմ կնոջս:

— Էդ էր պակաս, ո՞վ բանի տեղ կդնի, ավելորդ բան է:

— Պապիկ, նամակ գրե՛մ Մոսկվա,— աչքերը ինձ հառած ասում է Մարինան:

— Դո՞ւ: Ախր, դու դեռ կարգին գրել չգիտես:

Մարինան լուռ գլուխը կախում է ու շարունակում կարդալ, իսկ մենք խոսակցությունը կիսատ թողած, ընդբաղվում ենք տան գործով: Քիչ հետո ինձ մոտ է վազում Մարինան՝ մի թուղթ ձեռքին:

— Պապի՛կ, կարդա:

Վերցնում եմ տետրակից պոկած թերթիկը ու կարդում:

«Մոսկվա: Ես սովորում եմ առաջին դասարանում: Մեր տունը շատ հեռու է դպրոցից, իսկ ես չեմ կարող ոտքով գնալ, ձմեռը ցուրտ է: Ինչո՞ւ գնացքը մեր կիսակայարանում չի կանգնում: Թող գնացքը մեզ մոտ էլ կանգնի:

Մարինա»

— Մարինա, սիրելիս, ախր ինքս էլ չգիտեմ, թե ուր ուղարկեմ քո նամակը: Չէ՞ որ Մոսկվան շատ մեծ է, կկորչի:

Իսկ երեխան թախանձագին խնդրում է.

— Չէ, պապիկ, ուղարկի, ես ուզում եմ, որ իմ նամակը Մոսկվա գնա:

Դե ես էլ չմերժեցի Մարինային: Ուղարկեմ, էլի, հո ինձ չե՞ն կախի:

Հաջորդ օրը Մարինային դպրոց տարա ու մտա փոստ: Էնզ այդ տետրակի թերթիկը դրեցի ծրարի մեջ, վրան գրեցի՝ «Մոսկվա, հաղորդակցության ժողկոմատ»: Ծրարի վրա գրեցի նաև մեր կիսակայարանի համարը՝ «812» ու ծրարը գցեցի փոստարկղ:

Շատ օրեր ու շաբաթներ անցան, բայց ոչ մի պատասխան չենք ստանում, նույնիսկ մոռացանք Մարինայի նամակի մասին:

Մի օր էլ կրկին ես եմ Մարինային դպրոցից բերում տուն: Կինս ուրախ-ուրախ մեզ ընդառաջ է վազում ու շնչակտուր վրա տալիս. «Տո, գիտե՞ս ինչ եղավ: Առավոտյան ձեր գնալուց քիչ հետո, մի գնացք կանգնեց: «Լսեք,— ասում է մեքենավարը,— ո՞ւր է այդ աղջիկը, որ դպրոց պիտի գնա, թող նստի»: Ապուշ եմ կտրել, լսածիս ու աչքերիս չեմ հավատում: Լեզուս կապ է ընկել: Գնաց, ասում եմ: «Լավ, ասում է,— մեքենավարը,— վաղը թող սպասի, ես էլի գնացքը կըկանգնեցնեմ»:

— Հետո՞, հետո եկա՞վ,— հարցնում եմ հուզված:

— Հետո՞, հա, ժամը 2-ին էլ Ստարոբելսկի կողմից մի գնացք եկավ, կանգնեց մի քանի վայրկյան ու գնաց:



Մինչև դուրս վազեցի, գնացքն արագ ընթացքով դուրս եկավ մեր կիսակայարանից:

— Տեսա՞ր, պապիկ, որ ասում էի իմ նամակը Մոսկվա կհասնի՞:

— Սպասիր, զավակս, սպասենք մինչև վաղը, տեսնենք էլի կկանգնի՞,— ասում եմ ես վարանոտ:

— Իսկ եթե չկանգնեց, ես կուշանամ դպրոցից,— լացակումած ասաց Մարինան:

Մի կերպ հանգստացրի երեխային ու մտանք տուն: Պառկել եմ: Քունս չի տանում: Գծից եկան նաև տղաս ու հարսս: Մեր պատմածին չեն հավատում:

— Պատահական գնացք է եղել,— անտարբեր ասում է հարսս ու երեխային պառկեցնում քնելու:

Մի՞թե Մարինայի նամակը Մոսկվա է հասել, մարդիկ ընդառաջել են թոռնիկիս: Չեմ հավատում:

Լույսը նոր էր բացվել, որ հագնըվեցի ու դուրս եկա բակ:

Նորից ձյուն էր եկել: Անհամբեր նայում եմ եկող ու անցնող գնացքներին: Չեն կանգնում: Գալիս ու սրընթաց հեռանում են կիսակայարանից: Տուն եմ մտնում: Մարինան թելում է:

— Պապիկ, գնացքը չեկա՞վ:

— Կգա, անպայման կգա,— հուսադրում եմ երեխային ու ինքս իմ մեջ մտածում. «Իսկ եթե չեկա՞վ»:

Նորից մոտեցող գնացքի ձայն եմ լսում, վազում եմ դուրս, իմ ետևից դուրս են թռչում Մարինան՝ պայուսակը ձեռքին, ու մայրը: Գնացքը մարդատար է: Մոտենում է ու... մեքենավարը գոչում է. «Կանգնեցնում եմ, երեխային շուտ նստեցրու»...

Եվ գնացքը կանգնում է: Մայր ու աղջիկ շտապ բարձրանում են առաջին իսկ պատահած վագոնը և գնացքը շարժվում է առաջ... Հուզմունքից աչքերս լըցվեցին: Ինչպիսի՜ բարի ու մեծահոգի մարդիկ կան, չէ՞ որ նրանք հարգեցին իմ Մարինայի մանկական ձեռքով գրած նամակը...

— Իսկ դրանից հետո այդպես կանոնավոր գնումգալի՞ս էր Մարինան,— հարցնում եմ ես:

— Այո, շատ կանոնավոր: Առավոտյան տանում էր, իսկ ժամը 2-ին մեկ ուրիշ գնացք՝ բերում: Հետո դըպրոցն ավելի խելացի բան մտածեց: Որպեսզի ամեն օր մենք 5 ժամ չկորցնենք, բարձր դասարանցիներից

# ԾՈՒՅԼԻ ԵՐԱԶԱՆՔԸ

ՆԱՆՍԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆ

Ա՜խ, երանի
Լիներ մի նավ,
Ինձ առնելով
Լուսին տաներ,
Եվ լինեին
Լուսնի վրա
Տուն ու դպրոց,
Դասարաններ։
Կպարեի
Ամեն անգամ
Ես դպրոցի
Ճանապարհին,
Օրագիրս
«Հինգով» միայն
Կլցնեի
Ամբողջ տարին։
Ասում են, որ
Թեթև է շատ
Լուսնի վրա
Մարդու քաշը։
Պիտի լինի
Թեթև ու հեշտ
Այնտեղ նաև
Դժվար դասը։

Նկ. ՀԱԿՈԲ ՍՈՒՔԻԱՍՅԱՆԻ

---

հերթապահներ նշանակեց Ստարոբելսկ կայարանում։ Ոմանք դիմավորում էին Մարինային, ոմանք էլ դասերից հետո բերում կայարան ու նստեցնում վագոն։ Իսկ մենք Մարինային այստեղից նստեցնում էինք վագոն և ժամը 2-ին դիմավորում։ Ահա ամբողջ պատմությունը։

— Իսկ հիմա որտե՞ղ է Մարինան, ի՞նչ է անում։

— Դե ասացի, չէ՞, պատերազմից առաջ սովորում էր Ստարոբելսկում։ Տասներորդ դասարան փոխադրվեց, որ պատերազմը սկսվեց։ Հիմա տանն է, գնա, ոտքիցդ արյուն է գալիս, համ կտեսնես նրան, համ էլ վիրակապդ կփոխեն։ Ահա, նայիր, ա՛յ նա է մեր կիսակայարանը, որը հիմա կոչվում է Մարինայի կայարան։ Դու գնա, իսկ ես շտապեմ գծերն ստուգելու։

— Շնորհակալ եմ և՛ օգնության, և՛ հետաքրքիր զրույցի համար, պապիկ։ Ես կգնամ։ Դու վերադարձիր։

Երկու օր ես ապրեցի Մարինայենց տանը։ Իմ խնամատարներին չէր հաջողվում գնացք կանգնեցնել։ Միայն երրորդ օրը վաղ առավոտյան դրսից հնչեց ծերուկի ձայնը. «Հե՜յ, լեյտենանտ, շուտ դուրս արի, գնացքը սպասում է...»

Արագ հագնվում եմ ու դուրս շտապում, սաստիկ ցավ պատճառելով ոտքիս։ Իմ ետևից դուրս են գալիս բոլորը։ Սանիտարական գնացք է։

Վագոնից երկու սանիտար թռչում են ցած ու վազում դեպի ինձ։

Նրանց օգնությամբ բարձրանում եմ վագոն։ Շոգեքարշը սուլում է ու գնացքը դանդաղ սկսում է հեռանալ կայարանից։

Կանգնած ոտնատախտակի վրա, գլխարկս հանած թափահարում եմ։

— Մնաք բարով, թանկագին բարեկամներ։ Մնաս բարով, Մարինայի կայարան։ Միշտ այդպիսին · մնա, բարի, հյուրընկալ։

# «ՎՈ՛ԼԳԱ», «ՎՈ՛ԼԳԱ»,

Դպրոցի երկրորդ հարկի լուսամուտը բացվեց, և մի աղջիկ, ցած կախվելով լուսամուտից, կանչեց.

— Է հե՜յ, ո՞վ կա այդտեղ...

Բակը դատարկ էր, և նրան ոչ ոք չլսեց: Քիչ անց աղջիկը հայտնվեց միջանցքում: Հենց այստեղ էլ, դասարանի դռան մոտ, դեմառդեմ հանդիպեց ընկերներին.

— Ինչու՞ ուշացաք, շո՛ւտ, շո՛ւտ: Եթերում նորից «Վոլգան» է:

— Ապարատը հո չե՞ս անջատել,—գործնական տոնով հարցրեց Մուշեղն ու իրեն նետեց սենյակ: Նա շտապ հագավ ականջակալները և ուրախ սեղմեց կոճակը.

— Ալլո՛, «Վոլգա՛», ես «Շիրակն» եմ, ինչպե՞ս եք լսում, ընդունում եմ...

Ընդամենը մի շաբաթ էր անցել այն օրից, երբ եթերում հնչեց անծանոթ ռադիոկանչը: Իսկ հետո պարզվեց, որ ռադիոկանչը



Վ. Ի. Լենինի տուն-թանգարանը Ուլյանովսկում

Ուլյանովսկ քաղաքի Լենինի անվան № 1 դպրոցի «Վոլգա» ռադիոխմբակից է: Եթերային հանդիպումները կրկնվեցին, և «Վոլգայի» ու Լենինականի Կրուպսկայայի անվան դպրոցի «Շիրակ» ռադիոակումբի բարեկամությունը շարունակվեց: Լենինի քաղաքում ապրող իրենց բարեկամներից նրանք լուսանկարներ, նամակներ ստացան: Ու մի օր էլ դպրոցում ուրախ լուր տարածվեց.

— Մուշեղը գնում է Ուլյանովսկ...

Մուշեղը մեկնում է Ուլյանովսկ՝ մասնակցելու «Լենինյան երապանքի ճամփաներով» հավաքին: Իհարկե, նա մենակ չէր, Երևանում նրան միացան Սիլվան, Համլիկը և Ռամոնան, երեքն էլ տարբեր դպրոցներից:

— Ես Ուլյանովսկում ծանոթներ ունեմ,— ասաց Մուշեղը.

Օդանավակայանում նրանց դիմավորեցին փոքրիկ ուլյանովցիները: Երկու փոքրիկներ, մի քիչ հեռվում կանգնած, ցրտից ոտքերն էին թփթփացնում գետնին: Հետո նրանք մոտեցան.

— Մենք Լենինի անվան դպրոցից ենք՝ «Վոլգայից»: Հենց վաղը դուք կգաք մեր դպրոցը, լա՛վ... Ճիշտ է, հավաքի բոլոր պատվիրակներն էլ մեզ մոտ կլինեն, բայց «Վոլգան» ձեզ հետ առանձին հանդիպում կունենա,— ասացին Լիդան և Կոլյան:

Հաջորդ օրը հավաքի պատվիրակների հետ եղան Լենինի տուն-թանգարանում: Ձյունոտ այգին խաղաղ էր, իսկ ինչ-որ մի ժամանակ չարաճճի Վոլոդյան քույրիկների՝ Օլգայի, Մարիայի, Աննայի և եղբայրների՝ Ալեքսանդրի ու Դմիտրիի հետ այստեղ ուրախ ու զվարճալի խաղեր է խաղացել: Ամռան շոգ օրերին այգուց դուրս եկող արահետը նրանց տարել է Սվիյագոյի գետափը:

Հետո դիտեցին տուն-թանգարանը, անցան սենյակից-սենյակ: Երբ մտան Վոլոդյա Ուլյանովի սենյակը, տեսան նրա գովասանագրերը, ոսկե մեդալը, հասունության վկայականը. Լիդան ասաց.

— Մեր դպրոցի թանգարանում էլ շատ հազվագյուտ փաստաթղթեր ու լուսանկարներ կան:

Հետո գնացին Լենինի անվան դպրոցը, որը տեղավորված է երբեմնի գիմնազիայի՝ երկհարկանի, ճերմակ շենքում:

Սիմբիրսկի գիմնազիան հիմա դարձել է աշխարհի ամենահայտնի հասցեներից մեկը:

— Սեպտեմբերի մեկին,— պատմում է Լենան,— առաջին դասարանցիները, բոլոր աշակերտների ներկայությամբ, երդում են տալիս՝ սովորել այնպես, ինչպես Վոլոդյա Ուլյանովը: Հետո ծաղիկներով բարձրանում են Վոլոդյայի դասարանն ու այնտեղ անցկացնում առաջին դասը:

Ընդարձակ, լուսավոր մի դասարան՝ երկրորդ հարկում: Վերջին նստարանին, արծաթագույն թիթեղիկի վրա գրված է. «Այստեղ նստել է 7-րդ դասարանի աշակերտ Վոլոդյա Ուլյանովը»:

— Հիմա այդ նստարանին նստում են այն աշակերտները, ովքեր ամենից լավ են սովորում,— ժպտում է դպրոցի դիրեկտոր Նիկոլայ Սյոմինը:

Լենինի անվան դպրոցում երկտարեցիներ համարյա չեն լինում: Յուրաքանչյուր սան երկհարկանի շենքի մուտքի մոտ եր-



Գիմնազիայի այն դահլիճը, ուր ավարտական քննություն է հանձնել Վլադիմիր Իլյիչը:

— Իսկ հիմա դիտեցեք Լենինականին նվիրված ցուցափեղկը:

Ռադիոակումբի սենյակում նրանց ուրախությանը չափ չկար: Ցուցափեղկում ոչ միայն Լենինականի, այլև Հայաստանի տեսարժան վայրերի լուսանկարներ կային, «Երևան—2750» լուսանկարների շարքը:

Այդ օրը № 1 դպրոց էին եկել նաև Ուլյանովսկի № 2 դըպրոցի ռադիո ակումբի երեխաները, որոնք նույնպես «Վոլգացիներ» են: «Շիրակի» ռադիոազդանշանները մի քանի անգամ էլ նրանք են «որսացել»:

# ԵՍ «ՇԻՐԱԿՆ» ԵՄ...

դուռ է տալիս: Նա գիտե, որ երկրում [illegible] այս դպրոցն է առաջնորդի ան[illegible]նը կրում: Եվ դպրոցն էլ բոլորովին [illegible] չէ: Դիմացի պատին, [illegible] արևով կուցված, Լենինի [illegible]քանշանն է, որով պարգևատրվել է դպրոցը երեք տարի առաջ:

Ահա և այն դահլիճը, որտեղ քննություններ է հանձնել Վոլոդյա Ուլյանովը: Այստեղ, սյունազարդ այս դահլիճում հիմա երեխաները առաջին անգամ հոկտեմբերիկական աստղիկներ ու կարմիր վզկապներ են կրում:

Քիչ անց հայ երեխաներին շրջապատում են «Վոլգայի» անդամները.

Բարեկամները միմյանց հրաժեշտ տվին: Ցտեսություն, Ուլյանովսկ, ցտեսություն, Իլյիչի մանկության քաղաք... Մենք չենք բաժանվում իրարից, մենք եթերում նորից միասին կլինենք:

*ԼՅՈՒԴՎԻԳ ԿԱՐԱՊԵՏՅԱՆ*



## Ի՞ՆՉ ԵՆ ԱՐՏԱՍԱՆՈՒՄ

Տասնհինգ-քսան խաղացողներ նստում են շարքով, իսկ մեկին դուրս են հրավիրում սենյակից: Խաղավարը երեխաներին բաժանում է Թումանյանի հանրածանոթ քառյակներից մեկի բառերը՝ յուրաքանչյուրին մի բառ: Դրսի մասնակիցը վերադառնում է: Երեխաները այդ բառերով մեկական նախադասություն են ասում: Երբ բոլորը նախադասությունները ասեն վերջացնեն, դրսից եկած երեխան պետք է գտնի, թե որ քառյակի բառերն էին բաժանված:

*ՎԱՐԴԱՆ ՊԵՏՐՈՍՅԱՆ*



*Նկ. ՀԱԿՈԲ ՍՈՒՔԻԱՍՅԱՆԻ*

# ԻՆՉՊԵՍ ՄԻԱՑՐԻՆ ԳԻՇԵՐԸ



ՌԵՅ ԲՐԵԴԲԵՐԻ

Նկ․․ ՌԱՖԱՅԵԼ ԲԱԲԱՅԱՆԻ

Ժամանակով մի փոքրիկ մանչուկ էր ապրում, որը չէր սիրում Գիշերին։

Նա սիրում էր

լապտերներ ու լապտերիկներ,
բուխարիկներ ու խարույկներ,
ջահեր ու աշտանակներ։

Իսկ Գիշերին նա բոլորովին չէր սիրում։

Մանչուկը ամեն տեղ լինում էր.

սեղանատանն ու ննջարանում,
մառանում ու հյուրասենյակում,
նկուղում էլ էր լինում,
և ձեղնահարկում։

Բայց ԳԻՇԵՐՈՎ փողոցում երբեք չէր եղել։

Նա չէր սիրում նաև անջատիչներին, որովհետև անջատիչներն անջատում էին



դեղին լամպերը,
կանաչ լամպերը,
ու նաև սպիտակ լամպերը։

Նրանք անջատում էին ամբողջ տան լույսերը՝
սենյակների լույսերը,
պատշգամբի լույսերը։

Նա չէր էլ ուզում նույնիսկ ձեռք տալ անջատիչներին։

Ու նաև չէր ուզում խաղալ փողոցում, երբ իջնում էր խավարը։

Նա շատ էր թախծում։

Նա շատ էր տխրում։

Որովհետև իր պատուհանից տեսնում էր, թե ինչպես են ուրիշ երեխաներ իրիկնադեմին խաղում բացատում, ինչպես են խավարի մեջ վազվզում այնտեղ՝ լապտերների լույսի տակ։

Նրանք շատ ուրախ էին։

Իսկ որտե՞ղ էր լինում այդ ժամանակ մեր մանչուկը։

Իր սենյակում։

Շրջապատված

լապտերներով ու լապտերիկներով,
ջահերով ու աշտանակներով,
մոմերով ու մոմակալներով,
և բոլորովին մենակ։

Նա սիրում էր միայն Արևին, դեղին Արևին։

Իսկ Գիշերին բոլորովին չէր սիրում։

Ու երբ գալիս էր այն ժամը, երբ հայրիկն ու մայրիկը մարում էին բոլոր լույսերը

մեկը մյուսի ետևից,
մեկը մյուսի ետևից —
խոհանոցի լույսը,
սենյակի լույսը,
պատշգամբի լույսը —

մեր մանչուկն էլ թաքնվում էր իր փոքրիկ մահճակալում, վերմակի տակ։

Եվ մինչև ուշ գիշեր, ամբողջ քաղաքում, միայն նրա սենյակի պատուհանն էր լինում լուսավորված։

Ու մի անգամ էլ, երբ հայրիկը գործով մի տեղ գնաց, իսկ մայրիկն էլ պառկեց քնելու, մանչուկը մենակ (բոլորովին մենակ) սկսեց շրջել բնակարանում և վառել բոլոր լույսերը։

Ուխ, ինչպե՜ս էին վառվում բոլոր լույսերը։
Վառվում էին նախասրահում
և պատշգամբում,
մառանում էլ էին վառվում
և խոհանոցում,
վառվում էին հյուրասենյակում
և նույնիսկ՝ ձեղնահարկում։
Պայծառ լույսն ու լույսը քիչ աղոտ,

Սպիտակ լույսն ու լույսը կարմրավուն:
Ամբողջ տունն ասես սուզվել էր լույսերի մեջ:
Բայց և այնպես մանչուկը թախծում էր:
Իսկ ուրիշ երեխաներ այդ ժամանակ խաղում էին մութ մարգագետնում:
Եվ ծիծաղում էին
մութ մարգագետնում:
Եվ հանկարծ նա լսեց,
թե ինչպես են բախում պատուհանը:
Ինչ-որ մութ բան թաքնվել էր պատուհանի տակ:
Ավելի բարձր բախեցին դուռը:
Ինչ-որ մութ բան թաքնվել էր դռան ետևում:
Դարձյալ բախեցին, պատշգամբից:
Ինչ-որ մութ բան թաքնվել էր պատշգամբում:

«Ես այդ չգիտեի»,— ասաց մանչուկը:
«Իսկ երբ միացնում են Գիշերը, գիտե՞ս, թե նաև ինչերն են միանում: ԾԱՂԻԿՆԵՐԸ:
Եվ ԳՈՐՏԵՐՆ էլ են միանում: Միանում են ԱՍՏՂԵ-ՐԸ՝
աստղերը՝ քնքուշ, երկնագույն,
աստղերը՝ պայծառ ու խոշոր:
Չէ՞ որ երկինքը լուսառատ տան նման է,
հյուրասենյակի լույսերով,
սեղանատան լույսերով,
ննջարանի և պատշգամբի լույսերով,
բուխարիկի լույսերով,
պատուհանների լույսերով:
Այնտեղ լույսեր կան՝



Եվ մեկն ասաց. «Բարև»: Եվ մանչուկը տեսավ մի փոքրիկ աղջկա: Նա կանգնել էր լույսերի մեջ,
թույլ ու պայծառ,
սառն ու տաք,
սպիտակ լույսերի և կարմիր լույսերի մեջ:
Եվ աղջիկն ասաց. «Իմ անունը Մութնյակ է»: Նա սև վարսեր ուներ ու սև աչքեր: Հագել էր սև զգեստ ու սև կոշիկներ: Սակայն դեմքը ճերմակ-ճերմակ էր, իսկ աչքերում վառվում էին պայծառ կրակներ, որոնք նըման էին աստղիկների:
«Դու միայնակ ես»,— ասաց Մութնյակ աղջիկը:
«Ես ուզում եմ երեխաների հետ վազվզել փողոցում,— ասաց մանչուկը,— միայն թե Գիշերին չեմ սիրում»:
«Ես քեզ կծանոթացնեմ Գիշերի հետ,— ասաց Մութնյակը,— և դուք կմտերմանաք»: Աղջիկը անջատեց շքամուտքի լույսը: «Տեսնո՞ւմ ես,— ասաց նա,— մենք հո լույսը չանջատեցի՞նք: Բոլորովին: Պարզապես, մենք միացնում ենք Գիշերը: Չէ՞ որ Գիշերն էլ կարելի է միացնել ու անջատել ճիշտ այնպես, ինչպես լամպի լույսը: Ու միևնույն անջատիչով»:

շատ սառն ու շատ ջերմ,
շատ թույլ, շատ պայծառ,
դեղին, կարմրավուն,
կանաչ, երկնագույն:
Մի՞թե հնարավոր է լսել ծղրիդի ճռոցը, երբ լույս է վառվում:
Ոչ:
Մի՞թե կարող ես լսել լճակի գորտերին, երբ լույս է վառվում:
Ոչ:
Մի՞թե կտեսնես աստղերը, երբ լույս է վառվում:
Ոչ:
Իսկ դու այս բոլորը չգիտեիր: Մի՞թե առաջ քո մտքով կանցներ, որ կարելի է
միացնել ծղրիդներին,
միացնել գորտերին,
միացնել աստղերին,
միացնել խոշոր, շատ խոշոր լուսինը»:
«Ոչ»,— ասաց մանչուկը:
«Ուրեմն, եկ միացնենք»,— ասաց Մութնյակը:
Եվ նրանք քայլեցին սանդուղքներով

ու ամենուրեք միացրին Գիշերը,
ու ամենուրեք միացրին Մութը,
ու Գիշերին ներս թողեցին բոլոր սենյակնե-
րը:

Եվ գործերին էլ միացրին,
և ծղրիդներին էլ միացրին,
և աստղերին էլ միացրին:

Եվ միացրին Լուսինը՝ մեծ ու ճերմակ Լուսինը, որ նման է պաղպաղակի:

«Օհո՜, ի՜նչ լավ է,— ասաց մանչուկը:— Իսկ կարելի՞ է, որ միշտ միացնեմ Գիշերը»:

«Իհարկե, կարելի է»,— ասաց Մութնյակ աղջիկը: Եվ անհետացավ:

Իսկ մեր փոքրիկ մանչուկը հիմա երջանիկ է: Նա սիրում է Գիշերին: Նրա սենյակում հիմա ոչ թե լույսի անջատիչն է, այլ Գիշերի միացուցիչը: Եվ նա հիմա բոլորովին չի վախենում անջատիչներից: Այլևս նրան հարկավոր չեն

մոմեր ու մոմակալներ,
ջահեր ու լամպեր:

Իսկ եթե ամառային մի երեկո ուզենաք հանդիպել նրան, ապա կտեսնեք, թե



ինչպես է նա միացնում ճերմակ լուսինը,
ինչպես է նա միացնում կարմիր աստղերը,
ինչպես է նա միացնում կապույտ աստղերը,
կանաչ, սպիտակ, դեղին աստղերը,
ամեն գույնի աստղերը,
ինչպես է նա միացնում գործերին, ծղրիդներին ու Գիշերը:

Ու ինչպես է մթան մեջ նա վազվզում բացատներում ու մարգագետիններում և ուրախանում ուրիշ երեխաների հետ:

Եվ ծիծաղում է:

Թարգմ. Կ. ՍԻՄՈՆՅԱՆԻ




Լույս է տեսնում 1925 թվականից

# ՊԻՈՆԵՐ

№ 9 Սեպտեմբեր 1969 թ.

ՀԼԿԵՄ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵՈՒԹՅԱՆ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկի առաջին էջը՝ «Թումանյանն ու կուրթանցիք» պատմվածքի նկարազարդումը նկ. ԱԼԲԵՐՏ ՅԱՐԱԼՅԱՆԻ


Ի տեղի գլխավոր խմբագրի՝ Կ. Ա. ՍԻՄՈՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**

ԲԱՐԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ. (պատասխանատու քարտուղար), ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Ս., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԵԼԻՔՅԱՆ Ս., ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍՄՐԱՏՅԱՆ Կ., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս.:

**„Пионер“** на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир банаки, № 15.

*Հասցեն՝ Երևան, Կարմիր բանակի փողոց, № 15, հեռախոսներ՝ 56—32—72, 2—68—16, 56—14—96:*

ՎՖ 05621: Պատվեր՝ 855: Տպաքանակ՝ 54600: Տպագրական 3 մամուլ: Ստորագրված է տպագրության 22/VIII, 1969 թ.: ՀՍՍՀ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության Ձ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ: Երևան, Տերյան փ. № 91: Գինը՝ 10 կ.




*Հարավ-Աֆրիկյան Հանրապետության արգելանոցներից մեկում տարօրինակ իրադարձություններ սկսեցին կատարվել։ Անհայտ չարագործները տեղից շարժում էին ավտոմեքենաները և նետում մի քանի հարյուր մետր հեռու, երբեմն զբոսաշրջիկները իրենց շրջված ավտոմեքենաները գտնում էին ճամփեզրի առուներում։ Պարզվեց, որ այդ անկարգությունների հեղինակը Տարզանն է՝ մի սովորական կրիա։ Ստվերոտ տեղ որոնելով, նա մտնում էր ավտոմեքենայի տակ և, քանի որ հաճախ տեղը դուր չէր գալիս, նա փորձում էր ստվերը տեղափոխել փարթամ խոտերի մեջ։ Ստիպված եղան Տարզանին պատժել՝ փակելով վանդակում։*

**Հնագույն մողեսները, որոնց կմախքները հայտնաբերվել են երրորդական ժամանակաշրջանի նստվածքներում, ունեցել են մինչև 9 մ երկարություն և մոտ 10 տ քաշ։ Վերջերս գիտնականները պարզեցին, որ այդ հսկաները ամենևին էլ անօգնական ու դանդաղաշարժ չեն եղել, ինչպես ենթադրվում էր։ Նրանց կմախքների ուսումնասիրությունները ցույց տվեցին, որ այդ մողեսները սրընթաց արշավել են մինչև ժամում 45 կմ արագությամբ։**

*Ապա պատկերացրեք, եթե կարող եք։ Դուք նըստել եք գնացք, որը սլանում է ժամում... հազար կիլոմետր արագությամբ։ Իհարկե, դուք կասեք, որ հնարավոր չէ այդպիսի բան։ Առայժմ իրոք այդպիսի գնացք գոյություն չունի, բայց Ճապոնիայում կառուցված է այդպիսի մի հրթիռային գնացքի մոդել, որը նշված ճանապարհահատվածը անցավ հենց այդ արագությամբ։ Այժմ Ճապոնիայի գիտնականներն ու կոնստրուկտորները հետազոտում են այդ արագությամբ սլացող գնացքի ստեղծման հնարավորությունները։*



Ֆրանսիացի դը լա Բեդուարը, որ շատ մեծ և արժեքավոր գրադարան ուներ, հինգ անգամ աճուրդ է կազմակերպել, որոնց ժամանակ վաճառվում էին նրա գրքերը։ Ամեն անգամ նա ներկա էր լինում աճուրդին և գըրքերը նորից վերադառնում էին... նրա գրադարանը։ Բեդուարը այնքան էր սիրում գրքերը, որ չէր կարողանում իրեն զրկել մի ավելորդ անգամ ևս նրանց արժեքավորության մեջ համոզվելու բավականությունից։

Դուք, իհարկե, գիտեք, որ վաղուց ի վեր փոստային աղավնիները օգտագործվել են կարևոր նամակներն ու լուրերը տեղ հասցնելու համար։ Բայց դա վաղուց էր, երբ չկային ժամանակակից փոխադրամիջոցները։ Իսկ ա՞յժմ։

Ինչքան էլ դա տարօրինակ է, նույնիսկ ժամանակակից ճեպընթաց գնացքը իր արագությամբ չի կարող մրցել փոստային աղավնու հետ։ Այդ բանը պարզ դարձավ այն փորձից հետո, երբ Հյուսիսային Շոտլանդիայից այդպիսի մի փոստային աղավնի հատուկ նամակով բաց թողնվեց դեպի անգլիական Սաութհեմփթոն քաղաքը։ Արագընթաց գնացքը, որը դուրս էր եկել հենց նույն ժամանակ և որը տանում էր այդ նույն նամակի պատճենը, նշանակված վայրը հասավ արագաթև փոստատարից մեկ և կես ժամ ուշ։

*Հնդկաստանում գյուղացիները դժկամությամբ են տրակտորներ գնում, հավատացնելով, որ փիղը շատ անգամ ավելի ձեռնտու է։ Նա ուժեղ է, ավելի երկարակյաց, վերանորոգման կարիք չունի և, որ ամենակարևորն է, ժամանակ առ ժամանակ լույս աշխարհ է բերում նոր փղեր, ինչին տրակտորը ոչ մի կերպ ընդունակ չէ։*



10 կ. 77806

# ՀՈՎՀԱՆՆԵՍ ԹՈՒՄԱՆՅԱՆԻ ՏՈՒՆ-ԹԱՆԳԱՐԱՆՈՒՄ









Լուսանկարները՝
ՎԱԶԳԵՆ ՂԱՍԱԲՅԱՆԻ